*ԲԱՆՔ ՀԵԳՆԱԿԱՆՔ*

## ԻՐԱԿԱՆ ՈՑԺԸ

— • —

Անգլիա, որուն գրահաւորներուն մուխը պիտի մարի, երկրագունդի վերջին մարդուն մահէն դոնէ քանի մը ժամ ուշ, մեր հաւատքը կասկածի փոխեց անցած 11 մայիսին իր գահակալին թագադրութեան առթիւ:

Հոն, այդ շքատօնին, ճոխութիւնն ...

...

բենճներուն եւ սովորութիւններուն»:

Բարեբախտ եմ որ ներկայ չէի հոն, ապա թէ ոչ Գ. Միջազգայինի անդամի մը պէս պիտի կարմրէի, մօտէն լսելով աշխարհի ամենահզօր երկրի վեհապետին այնքան ակնյայտ արտայայտութիւնը եւ տեսնելով Նեւտոնի, Շէյքսփիրի եւ Տարվինի հայրենակիցներուն՝ թագաւորի մը շուրջը համբուրելու ատեան հնապաշտութիւնը:

...

Կովկասը եւ ներկայիս ալ կը տառապի անոր թաթին տակ: Տարրական այդ բաներու մասին պարտաւոր էր գիտնալ Ռասուլ Զադէն, ծնած Կովկասի մէջ եւ որոշ ժամանակ ալ կերած աղուհաց Նոր Թուրքիոյ մէջ:

Ինքօնիւի յաղթականը, այս բոլորը տեսնելով, մինչեւ իսկ չուզեց մնալ Փարիզ:

Ալ ո՞վ կը վախնայ բրիտանական գրահաւորներէն...:

Կ. ՊԵՏՈՒՇ

## Պ. ՅՈՎՍԷՓ ՓԻՒՇՄԱՆ

### ԱԶԱՏ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒՆ ՄՕՏ

— • —

Վերջերս Ամերիկայէն Փարիզ հասաւ մեծանուն նկարիչ Յ. Փիւշման իր բնտանիքով՝ կարճ ժամանակի մը համար:

Հ. Ա. Ա. Միութեան վարչութիւնը, Բարեգործականի Տան սրահներուն մէջ, ի պատիւ մեր հիւրին եւ ...

...

Ռանժէլեան արտասանեց, ֆրանսերէն, իր ստեղծագործութիւնը «Ուրֆայի լքուած տունը», Օր. Շուշանիկ Թիւրապեան՝ դաշնակի կտորով մը արտայայտեց խոստմնալից արուեստագէտի մը յատկանիշները:

ՀՐ. ԱԼԵԱՆԱՔ

# ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

## ԱՓ ՄԸ ՀԱՅԵՐ

ՊԼՍԷԺ (Կառ), 10 յունիս.— Զորս տարիէ ի վեր կը պաշտօնավարեմ տեղւոյս մետաքսի մանարանին մէջ իբր քօնթռմէթր: 110ի չափ տեղացիներ կ՚աշխատին: Մեր տեղը ըլլալով մեծ մասով գործաւոր դասակարգի կեդրոն, անշուշտ գործադուլներ եւն. տեղի ունեցան եւ մէկ երկու շարաթ գործերու դադարումէ վերջ վերսկսաւ ...

...

ՄԱՄՈՒԼ

## ԿՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

— • —

« Յուսաբեր » հետեւեալ խորհրդածութիւնները կ՚ընէ այս խորագրով խմբագրականի մը մէջ (3 յունիս).

Մօտ է դպրոցական արձակուրդը:

Նորէն քննութիւններ, հանդէսներ, շրջանաւարտներ, քիչ մը յուզում, խրախուսանք, ճառ ու ծափ եւ, յետոյ, լռութիւն երկու - երեք ամիս:

Ամէն տարի նոյն երեւոյթը կը կրկնուի, առանց զգալի փոփոխութեան. ու մենք կը դիտենք երեւոյթը՝ իբրեւ եղանակի յատուկ բերք մը:

Հարցուցա՞ծ ենք, կամ կը հարցնե՞նք թէ տարիները ինչ փոփոխութիւն կը բերեն դպրոցներէն ներս, մեր կրթական կեանքին ու գործին մէջ:

...

ՕՐ. ԱԼԻՍ ԳԱՎՈՒՔՃԵԱՆ

եւ

**Comte LATERRIE DE LORENCEZ**

Ամուսնացած

Փարիզ, 10 Յունիս 1937

տեւական ու կենսական հողերուն:

Որ՝ իր վրայ դրոշմը կրէր հաւաքական աշխատանքին ու ազգային ուժերու լարումին:

Տեղեակ ենք, որ կրթական Յանձնախումբ մը շուրջ տասը ամիսէ ի վեր ծրագիր մը կը մշակէ Եգիպտոսի հայութեան բոլոր դպրոցներուն համար: Չենք գիտեր դեռ այս մշակումին արդիւնքը, որ անաւարտ է, թէեւ լսած ենք ելքի մասին, որքան ալ մէկ ...

...

ՍՏԱՑԱՆՔ

ՍԻՄԷՈՆ ԴՊՐԻ ԼԵՀԱՑԻՈՑ ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆ, Ուսումնասիրեց եւ հրատարակեց Հ. Ներսէս Վ. Ակինեան, տպ. Վիէննա, Մխիթարեան, 1936, գին 4 զ. Փր.:

ԵՂԻՇԷ ՎԱՐԴԱՊԵՏ ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ (մատենագրական - պատմական ուսումնասիրութիւն), Գրեց Հ. Ներսէս Վ. Ակինեան, Մասն Երկրորդ, տպ. Վիէննա, Մխիթարեան տպարան 1936 գին 4 Զ. Ֆր.:

ՄՈՎՍԷՍ Գ. ՏԱԹԵՒԱՑԻ, ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍՆ ՈՒ ԻՐ ԺԱՄԱՆԱԿԸ, Գրեց Հ. Ներսէս Վ. Ակինեան, տպ. Վիէննա, Մխիթարեան, 1936, գին 4 Զ. Ֆր.:

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (983)

# ՋԱՐԹՕՆՔ

### (ՎԷՊ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԵԱՆՔԷ)

— • —

— Ուշացանք, Յակոբ, անմիջապէս ճամբայ ելլենք: Սաթենիկ, ուրեմն հոս կրնանք հաւաքուիլ:

— Ես ոչ մէկ անպատեհութիւն կը տեսնեմ, — պատասխանեց մանկամարդ աղջիկը,— անշուշտ ստվորական զգուշութիւնները ձեռք կ՚առնենք...

...

խանեց.

— Ակամա, ուշացանք. մինչեւ որ պահեստի բերանը բացինք... ի զուր սպասեր էք: Գիշեր բարի...,— ու Լեւոնը իր սենեակի դուռը բանալով ներս մտաւ.

— Գիշեր բարի,— հաղիւ լսուեցաւ ...

...

ձայնին մէջ, սրտցաւ շեշտ մը, որուն չէր կրնար դիմադրել Սոնիան: Անմիջապէս Վարդանի պատկերը գծագրուեցաւ աղջկան մտքին մէջ: «Արդեօք ինք ապրա՞ծ էր նման օրեր», ու դառն ժպիտ մը կծկեց Սոնիայի նուրբ շրթները:

Լեւոնը չորս բոլորը նայելով՝ դառնութեամբ ժպտեցաւ: Որքա՜ն նմանապահեստներ կառավարութեան ձեռքը անցած էին: Ի՜նչ սարսափելի հարուած էր յեղափոխական շարժման համար Դաւոյի դաւաճանութիւնը: Թշուառականը տասնեակներով մեծ պահեստներու տեղերը ցոյց տուած էր կառավարութեան: Անոնց քով Լեւոնի մօտ գտնուած պահեստը աննշան բան մըն էր: Այդ փոքր պահեստը կը պարունակէր քանի հինգ զինուորի անհրաժեշտ պարագաները:

Լեւոնը ուշադրութեամբ քննեց այդ պահեստին մէջ գտնուող բոլոր իրերը: Հրացաններու կողքին դրուած էին լեցուած փամփշտակալներ, դարակներու վրայ դասաւորուած ջրամաններ, խղամաններ, չանթաններ, ...

...

(Շար.)

ՄԱՒԽԱՍ

